

# ԱՄԱՌ Է...

ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ

Ամառ է, ամառ է, բայց ինչի՞ համար է։
— Անտառում, ծովափին հանգստի համար է,
— Հեռավոր ճամբարներ գնալու համար է։
— Բակային ճամբարում մնալու համար է։
— Բոլորն այս, սիրելի՛ս, կարծում եմ,
հարմար է։
Բայց նաև անհանգիստ, գործերի համար է.
Հանքերում հոգնելու, իսկ արձակ դաշտերում
Վառվռուն հասկերը հնձելու համար է։
Աշուն կա, ձմեռ կա, գարուն կա, բայց
կյանքում
Ամառը շատերի տենչանքի համար է։
— Իսկ ծույլին, որ ունի աշնանը քննություն,
Ամառը, իհարկե, տանջանքի համար է...

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

# ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ՇՈԿՈԼԱԴՆԵՐ

ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

— Շոկոլա՞դ, անուշ շոկոլա՞դ,— փողոցից փողոց անցնելով, կանչում էր մի պատանի:

Անցորդները լսելով տղայի ձայնը, հաճախ, կանգնեցնում էին նրան:

— Տղա ջան, ինձ մի հատ տուր՝ բերանս քաղցրացնեմ:

Տալիս էր տղան, փողն ստանում ու անմիջապես ծլկում:

Գնողը բաց էր անում գեղեցիկ փաթեթը և շոկոլադի փայլուն թղթի հետ փաթաթված էր տեսնում նաև մի նկար:

Միջին տարիքի մի թիկնեղ տղամարդ՝ փայլուն ճակատով և ճաշակով թողնված կարճ բեղ-մորուքով, զրահագնացքի վրայից ձեռքն առաջ պարզած, ըստ երևույթին, ոգևորությամբ ճառ էր ասում:

Գնողը հետաքրքրված նայում էր, թե ով է: Եվ նըկարի տակ գրվածն էլ կարդալուց հետո, զգուշորեն այն գրպանն էր սահեցնում ու արագ հեռանում:

— Շոկոլա՞դ, անուշ շոկոլա՞դ...

Ձյան փաթիլները հանդարտորեն նստում էին փողոցների սալահատակներին և անմիջապես հալվում: Տղան սրթսրթալով անցնում էր բազմամարդ փողոցով, երբ մի կարճահասակ ոստիկան մոտեցավ նրան.

— Մի շոկոլադ տուր, տղա՛:

Տղան ուզում էր փախչել, բայց ոստիկանը բռնեց նրա թևից:

— Չե՞ս ուզում տալ, ստահա՛կ,— քիչ մնաց ոստիկանի սուր-սուր բեղերը խրվեին պատանու աչքերը:

Տղան ուրուրի ճանկն ընկած աղավնու պես թպրտում էր ոստիկանի ձեռքում:

Ոստիկանը շոկոլադի փաթեթը մի ձեռքով չի կարողանում բաց անել և, հետաքրքրությունից մղված, տղայի թևը բաց է թողնում, որ վերջապես տեսնի, թե ինչու մարդիկ շոկոլադը բաց անելուց հետո, ուտելը մոռացած, գրավվում են մի ինչ-որ բանով...

Ոստիկանի աչքերը չռվում են, շփոթմունքից մատները դողում, և վտանգավոր նկարը ձեռքից սահում է մայթի վրա:

— Շոկոլա՞դ, անգլիական շոկոլա՞դ,— հեռվից լսվում է տղայի զիլ ձայնը:

Ոստիկանը նոր է գլխի ընկնում, որ տղան փախել է: Իսկույն սալահատակից թռցնում է նկարը և տագնապով վազում ձայնի ուղղությամբ:

* * *

Փոքրիկ պատուհանից լիալուսինը արծաթյա շողերով ողողել է Ստեփանի դեմքը: Նա դեռ արթուն է: Բարձի տակից հանում է փոքրիկ նկարը և երկար դիտում: Անհաջողությունից տխրել է: Այո, ավելի զգույշ պիտի լիներ, որ նկարը չընկներ ոստիկանի ձեռքը...



Հիշում է այն չարաբաստիկ գիշերը, երբ իրենց նկուղը խուզարկելուց հետո ոստիկանները հորը բանտ տարան, իսկ մի քանի օր անց մայրն անկողին ընկավ, որ երբեք վեր չկենա:

Դրանից հետո Լադո քեռին միշտ գալիս էր Ստեփանենց տուն, երկար զրուցում հայրիկի մասին, մխիթարում, մի փոքր կատակում, ապա տատին դըժվարությամբ համոզելով, փող էր տալիս ու գնում:

Մի օր էլ, երբ հիվանդ Լադո քեռու համար Ստեփանը խանութից գլանակ էր տանում, մի արտասովոր ժպիտ դեմքին՝ քեռին նստեցնում է նրան իր դիմացը:

Փետրվարյան լարված օրերն էին: Ազատության հավատը միավորել էր աշխատավորներին, քաղաքում սպասվում էին վճռական դեպքեր:

— Ափսո՜ս, որ հայրիկդ հետս չի,— հառաչում է Լադո քեռին:

Ստեփանը տխրում է:

— Մի՛ մտածի, Ստեփի՛կո, շուտով կյանքը կփոխվի... Հայրիկը կազատվի աքսորից, դու էլ դպրոց կըգնաս, Շուշանիկն էլ...

Ստեփանի գունատ այտերը շառագունում են:

— Գիտե՞ս ով է մեր ազատարարը:



Ո՞րտեղից իմանար Ստեփանը:

— Չգիտես... ահա՛ նա, աշխարհին սիրելի մի մարդ:— Ու ցույց է տալիս Լենինի նկարը:

Ստեփանն ուշադիր նայելուց հետո անհամարձակ ասում է.

— Տվեք ի՛նձ, Լադո՛ քեռի:

Քեռին տալիս է, և Ստեփանը ուշադիր, երկար նայում է նկարին, ապա հարցնում.

— Ինչո՞ւ այսքան փոքր է:

— Որ հարմար լինի տարածման:

— Ո՞վ պիտի տարածի:

— Ով որ ցանկանա և կարողանա:

— Բա ես չեմ կարո՞ղ...— մի տեսակ նեղացած հարցնում է Ստեփանը:

Քեռին մտածում է. «Թող կոփվի կյանքի դպրոցում, որ իսկական մարդ դառնա»:

— Լավ, ստացիր և գործի՛ր,— ու տալիս է մի փոքրիկ կապոց,— բայց մտածված, հա՜, չբռնվես:

— Գիտեմ, թե ինչպես կտարածեմ...

Այդ հանդիպումից չէր անցել մի քանի օր, Լադո քեռին ձերբակալվեց:

Մյուս օրը Ստեփանն ավելի զգույշ էր: Նախ իր շուրջն էր նայում, ապա կանչում.

— Շոկոլա՜դ, անուշ շոկոլա՜դ:

Մոտենում էր հրապարակին, երբ նրա ուշադրությունը գրավեց փողոցով շարժվող ցուցարարների մի ահագին բազմություն: Առաջից գնում էին երկու հաղթանդամ մարդիկ: Ստեփանը զարմացած մեկ էլ ուշադիր նայեց ու... տեսավ նրան՝ Լադո քեռո՜ւն... Ուրեմն բանտից փախել է, բայց ինչպե՞ս... կեցցե՛ս, Լադո՛ քեռի... Իսկ նրանց հետևից՝ թևերին կարմիր ժապավեններ կապած երիտասարդներ, ապա՝ մարդիկ, մարդիկ... Ոմանք բռունցքները էին շարժում օդում: Ցուցարարները երգում էին:

Ստեփանը շարժվում է ցուցարարների հետ, աշխատելով մոտենալ Լադո քեռուն:

Մեկ էլ՝ քառատրոփ վրա են հասնում զինված ձիավորներ: Ցուցարարները սեղմվում են, որ դիմադրեն ոստիկաններին: Ամեն ինչ խառնվում է իրար... Հոսանքը Ստեփանին շպրտում է դեպի գետափ...

Արյունլվա Լադո քեռուն ոստիկանները քաշքշելով տանում են...

Ստեփանի ոտքերը թուլացան: Նստեց մի կոճղի: Լադո քեռին նրա մտքից դուրս չէր գալիս:

Ոստիկանապետը մեկ-մեկ բաց անելով շոկոլադների փաթեթները, հանում է փոքրիկ նկարներն ու զարմանում. «Ա՛յ քեզ հնարամտություն...»

Նկարների տակ մի քանի լեզուներով գրված էր. «Աշխատավո՛ր,. փշրի՛ր քո դարավոր լուծը: Պայքարում մենք մենակ չենք մնա. ազատարար բոլշևիկյան Ռուսաստանը եղբայրական ձեռք կմեկնի մեզ»:

— Ա՜յ ա՜յ... լակոտ, դու է՜լ ես Լենինին տարածում...

Եվ ոստիկանապետի քար հայացքը ծանրանում է Ստեփանի վրա ու ավելի սեղմում աթոռին:

— Ո՞վ քեզ հանձնարարեց, որ շոկոլադնե՜ր վաճառես:

Ստեփանը լուռ է:

— Պատասխանի՛ր:

— Կամոն տվեց,— հորինում է Ստեփանը, գիտենալով, որ Կամոն քաղաքում չէ:

— Ո՞վ,— լսածին չհավատաց ոստիկանապետը:

— Կամոն:

— Կամո՞ն... որտե՞ղ... ե՞րբ...— ներքին տագնապ է ապրում, որ Կամոն քաղաքում է:

Տղան զգաց, որ իր խոսքը իրոք մոլորության մեջ ձգեց նրան:

— Որտե՞ղ տվեց,— ավելի այլայլվեց ոստիկանապետը. այդ ե՞րբ է հայտնվել Կամոն, որ իրենք տեղեկություն չունեն...

— Գետափի մոտ:



— Անձա՞մբ տվեց:

— Մի մարդ հանդիպեց ու ասաց. «Տղա՛, փող վաստակել ուզո՞ւմ ես»: Ասացի՝ ուզում եմ: «Դե որ ուզում ես, սրանք ծախի՛ր»:

— Շոկոլադնե՞րը:

— Հա՛, թղթերն էլ հետը: «Ծախի՛ր,— ասաց,— շոկոլադների փողը քեզ»,— միամիտ ձևացնելով ստեց Ստեփանը:— Տանը հիվանդ տատ ու փոքր քույր ունեմ, բա ինչպե՞ս պահեմ...

— Այսպես... հետո՞:

— Վերջում ասաց. «Իմ անունը Կամո է, էլի այստեղ կհանդիպենք, որ էլի ստանաս...»

— Հը՞մ...— մտածմունքի մեջ ընկավ ոստիկանապետը. ուրեմն Կամոն քաղաքումն է...— Տղա՛, ե՞րբ տվեց:

— Ե՞րբ էր... հա, երկու օր առաջ,— դարձյալ հնարեց Ստեփանը:

Ոստիկանապետը հարցաքննությունը կիսատ թողեց, վերցրեց լսափողը և ուզեց զանգահարել ներքին գործոց մինիստրություն, բայց Կամոյի անունը տալն անգամ վտանգավոր համարելով, լսափողը ցած դրեց: Վերցրեց տղայի շոկոլադները և առանց գլխարկի դուրս եկավ սենյակից: Բանալին երկու անգամ պտտեցնելով՝ դուռը կողպեց: Ստեփանը լսում էր նրա արագ հեռացող քայլերի ձայնը:

Մենակ մնաց: Մի դող անցավ նրա մարմնով: Պարզ էր, որ ծուղակ է ընկել: Պատուհանից ցած նայեց. երկրորդ հարկումն է: Զգուշորեն կրկին նայեց: Ջրհորդա՞ն... Ուրախացավ Ստեփանը: Բայց ինչպե՞ս հասնի, պատուհանի ապակին խանգարում է: Գրպանի փոքրիկ դանակը գործի դնելով՝ հանեց ապակին: Կոշիկները դրեց ծոցը: Կախվեց պատուհանի միջով և ոտների մատները տեղավորեց աղյուսի փոքրիկ անցքերում: Ձեռքը մեկնելով՝ բռնեց ջրհորդանը գամող երկաթից և աչքերը փակեց... Մի ձեռքով բռնած բաց պատուհանի եզրից, կամաց-կամաց թեքվեց դեպի ջրհորդանը, և հանկարծակի պատուհանը բաց թողնելով, փաթաթվեց ջրհորդանին... իջավ: Զննեց իր շուրջը. ոչ ոք չկար: Ծլկեց...

Երբ կարճահասակ ոստիկանը վերադարձավ, որ Ստեփանին բանտ տանի, զարմանքից քար կտրեց... Ու տեսնելով բաց պատուհանը, թուլացած ընկավ բազկաթոռին:

Լուրեր էին պտտվում, որ Կարմիր բանակը մոտենում է: Քաղաքում դաժան կարգ էր տիրում և շարունակ ձերբակալություններ էին լինում:

Ցուրտ ու խոնավ օր էր: Ստեփանը երկար ժամանակ տանն էր: Երբեմն հրաձգություն էր լսվում: Քաղցը տանջում էր բոլորին: Տատիկն էլ պոկ չէր գալիս Ստեփանից, որ նա դուրս չգնար: Այդ օրն էլ անցավ: Էլ չկարողացավ համբերել և վաղ արշալույսին փողոց ելավ: Մայթերը համարյա դատարկ էին:

— Շոկոլա՞դ, անուշ շոկոլա՞դ:— Մի քանի նկար էր մնացել տարածելու:

Քաղաքում ոչ մի ոստիկան չէր երևում: Ստեփանը զարմացած կանգ առավ նրբանցքում. բոլորը վազում էին դեպի կամուրջը:

— Գալի՜ս են, գալի՜ս,— բացականչություններ էին լսվում ամեն կողմից:

Ստեփանն էլ է վազում դեպի քաղաքի ծայրամասը, որտեղ գնացքի ռելսեր էին ձգված:

Հանկարծ լսվում է ձիերի դոփյուն... Կարծես հողի տակից հայտնվում են ձիավորները: Մարդիկ դուրս են թռչում թաքստոցից ու խառնվում հեղեղի նման հոսող զորքին: Ձիերի սմբակների չըխկչըխկոցներն ու հետևակի համաչափ քայլերը խլացնում էին ձայները: Կոմունարկայով մի ձիավոր շարունակ նայում էր զորքի հետ շարժվող Ստեփանին: Հանկարծ նա կանչեց: Ստեփանը շատ պարզ լսեց իր անունը...

Որտեղի՞ց իր անունը գիտի այդ բեղավորը, զարմացավ Ստեփանը, բայց ավելի մոտ գնաց ձիավորին:

— Հայրի՜կ, հայրի՜կ,— թռավ դեպի նա:

Բեղավորը թռցրեց Ստեփանին իր գիրկը և փարվեց որդուն...

Ցնծությունը համատարած էր. ոմանք ուրախությունից արտասվում էին:

— Հայրի՛կ, Լենին քեռին էլ եկա՞վ,— հարցրեց Ստեփանը:

— Ոչ, նա Մոսկվայումն է, մենք նրա զորքն ենք:

Տղան սպասում էր, որ կտեսնի Լենինին:

— Դե ասա, Ստեփո՛, ո՞նց է տատին, մերդ, Շուշանիկը:

Տղան հիշեց մոր մահը և խորհրդավոր լռեց: Պատասխանի փոխարեն մեկնեց մի շոկոլադ և հայտնեց Լադո քեռու բանտարկվելու մասին:

— Հենց այսօր կգտնեմ քեզ, իմ Լադո՛,— ասաց հայրը և ձին քշեց առաջ:

Եվ Լենինի զորքը հաղթական մտավ քաղաք: Մարդիկ զարմանքով նայում էին զորքի հետ եկող ճարպիկ տղային, որ մի քանի օր առաջ վաճառում էր խորհրդավոր շոկոլադներ:

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ



Ջրհորն անտառում էր:

Այդ ջրհորից մարդիկ օգտվել էին տարիներ ու գուցե դարեր առաջ: Այժմ ոչ ոք այնտեղից ջուր չէր վերցնում: Անտառում սառնորակ աղբյուրներ կային, իսկ հարևան գյուղում արդեն հայտնվել էին առաջին ծորակները. հեռու սարերից խողովակներով ջուր էին բերել գյուղ:

Բայց դեպի ջրհորը տանող մի նեղլիկ արահետ, այնուամենայնիվ, կար: Այդ արահետը մեր ճամբարից էր ձգվում: Բանուկ չէր, ցերեկով գրեթե ոչ ոք չէր անցնում այդ արահետով: Գիշերով սարսափելի էր այդ ճանապարհը, սարսափելի էր ջրհորն իր ամայի շրջակայքով, սարսափելի էր, բայց և խորհրդավոր ու... պատվավոր:

Ջրհորի պահակակետը համարվում էր ամենադժվարն ու ամենակարևորը:



Նկ. ԿԱՐԻՆԵ ՄԻՐԶԱՅԱՆԻ

# ՋՐՀՈՐԻ ՄՈՏ

*ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ*

Ջրհորի պահակակետն ուրիշ էր: Այդտեղից ոչ ճամբարն էր երևում, ոչ էլ խարույկի կրակները: Այդտեղ լուռ էր և ամայի, ու ընկերներից հեռանալուց հետո շուրջն ավելի խավար ու ավելի ամայի էր դառնում...

Պահակայիններն անքուն անդադար պիտի հսկեին, որ «դասակարգային թշնամին» ջրհորի ջուրը չթունավորի: Մեկնից ոչ ոք երբեք ինքն իրեն հարց չէր տվել, թե ո՞վ էր այդ «դասակարգային թշնամին» և ինչու՞ պիտի թունավորեր ջրհորի ջուրը, այն ջրհորի, որից ոչ ոք չէր օգտվում: Եվ մի՞թե այդ հարցն էր կարևորը: Կարևորը խորհրդավորությունն ու քաջությունն էր, գիշերը անտառի ծմակում, խավարի ու անիմանալի շշուկների մեջ մարտական պոստում կանգնելը, որ չէր վստահվում ամեն մի ճամբարականի:

Ջրհորի պահակակետը գնում էին միայն ամենաօրինակելի ու ամենաքաջ տղաները: Դա որոշում էր ճամբարի շտաբը, և ով մի անգամ եղել էր ջրհորի պահակակետում, այլևս նշանավոր էր դառնում ու բոլոր տղաների նախանձի առարկան:

•

Հիմա կպատմեմ, թե ինչպես իմ բախտը բանեց, ինչպես արժանացա ջրհորը հսկելու պատվին և ինչ եղավ այդ «խորհրդավոր» գիշերը:

Օձն ու լորտուն մեկ չեն: Օձը թունավոր է, մանավանդ մեր երկրի «գյուռզա» օձը, կամ գյուրզան: Իսկ լորտուն անվնաս սողուն է: Ես դա վաղուց գիտեի և դեռ հայրենի գյուղի այգիներում լորտու բռնելն ինձ համար հասարակ բան էր: Ես մի լորտու բռնեցի ու բերեցի ճամբար: Աղջիկներն, իհարկե, ճչալով փախան, իսկ տղաներին ես ակնվորեն բացատրեցի օձի ու լորտուի տարբերությունը: Բայց, այնուամենայնիվ, իմ «քաջության» համբավը տարածվեց: Ինքս էլ չէի կարծում, թե այդքան նշանավոր կարող էի դառնալ այդ խեղճուկրակ սողունին բռնելով: Բայց արի ու տես, որ հենց այդպես եղավ: Ինձ դեռ խարույկից առաջ «թաքուն» հայտնեցին, որ շտաբը քննել է ինձ պարգևատրելու հարցը: Իսկ երբ խարույկը վառվեց ու մեր տողանը երգեց ճամբարի հրաշալի հիմնը, երբ ճամբարի պետն ընդունեց ջոկատավարների զեկույցները, տիրեց մի խորհրդավոր լռություն, շտաբի պետը բարձրացրեց ձեռքն ու ասաց.

— Երկրորդ ջոկատը նշանակվում է հերթապահ: Պահակապետ՝ ջոկատի հրամանատար ընկեր Լալայան, ճամբարի դարպասների մոտ պահակայիններ նշանակել երկրորդ ջոկատի պիոներներից:— Շտաբի պետը ձայնը հանդիսավոր բարձրացրեց.— Օրինակելի վարքի և արտակարգ քաջության համար ջրհորի մոտ պահակայիններ են նշանակվում հետևյալ ընկերները.— նա կարդաց չորս ընտրյալների անունները և դրանց մեջ նաև իմը:

Սիրտս հրճվանքով լցվեց: Ընկերներիս վառվող հայացքների տակ, ես հպարտ-հպարտ մոտեցա շտաբի պետին և ստացա իմ «զենքը»՝ փայտե նիզակը փոքրիկ, կարմիր դրոշակով...

Եվ ահա գիշեր է: Ես կանգնած եմ իմ պահակակետում, հին ջրհորի մոտ, խավարի մեջ չռել եմ աչքե-

րըս, լռդությունս լարել, որ «դասակարգային թշնամին» չկարողանա աննկատ մոտենալ ջրհորին և ջուրը թունավորել: Ես դարձյալ չեմ մտածում, թե ով է այդ դասակարգային թշնամին և նրա ինչին է պետք մոռացված ջրհորը: Չեմ մտածում նաև, թե հարձակման դեպքում ինչպես եմ պաշտպանվելու, ինչպես եմ կռվելու զինված թշնամու դեմ իմ փայտե նիզակով: Ես այդպիսի բաների մասին չեմ մտածում: Ես մտածում եմ այն մեծ պարտականության մասին, որ ահա դրել են իմ ուսերին, այն երջանկության մասին, որ մարդուս տալիս է իր ընկերների վստահությունը:

Չեմ ասի, թե չէի վախենում: Խոստովանում եմ, ես էն գլխից էլ արտակարգ սրտոտներից չէի, սովորական մարդ եմ, ոչ վախկոտ և ոչ էլ քաջասիրտ: Իսկ այստեղ առաջին անգամ մնացել էի մենակ, խաղաղված անտառի անիմանալի շշուկների մեջ պարզ զգում էի սրտիս զարկերն ու կսպում, հաղթահարում վախս հպարտության և պատասխանատվության զգացումով:

Գիշերը թանձրանում էր: Ինչ-որ տեղից չրթչրթոց էր լսվում: Ես գիտեի, դա խավարասեր խլուրդն էր, որ փորում էր իր զարմանալի թունելները և մեկ-մեկ քիթը դուրս հանում խոնավ հողի տակից: Ծառերի սաղարթների մեջ ծվլթում էին քնած թռչունները, հեռվում ծափ էր տալիս բուն և օդը ճեղքում իր սուր ու տհաճ աղաղակով...

Րոպեներն անցնում էին ու ոչինչ չէր փոխվում: «Դասակարգային թշնամին» չէր գալիս ջուրը թունավորելու: Սիրտս աստիճանաբար հանդարտվում էր, վախը չքանում, մնում էր միայն պատասխանատվության ու հպարտության զգացումը:

Բայց հանկարծ ես թիկունքից մի անսովոր խշշրտոց լսեցի: Ընդոստ շուռ եկա և հեռվում, մասրենու թփի տակ տեսա մի զույգ կրակ: Սարսափը պաշարեց ինձ: Ես գիտեի, թե ինչ կրակներ են դրանք, շատ էի կարդացել, թե խավարում գայլի աչքերը լույս են տալիս: Առաջին զգացումս այն եղավ, որ վար գցեմ ձեռքիս նիզակն ու գլխապատառ վազեմ դեպի ճամբար: Զարմանալի է, միայն այդ վայրկյանին ես հասկացա, որ ձեռքինս իսկական զենք չէ, և դրանով չեմ կարող պաշտպանվել ահռելի գազանից: Ես հենց այդպես էլ կանեի, կփախչեի, բայց հանկարծ մի միտք կայծակեց գլխումս: Ես ինձ ասացի. տասնյակ գրքեր ես կարդացել հերոսության ու անձնազոհության մասին, երազում ես դառնալ հեռավոր ճամփորդության նավի կապիտան կամ քաջ հրամանատար ու թե հարկ լինի՝ կռվել հայրենիքիդ համար, ինչպես այն փոքրիկ Գավրոշն է կռվել Փարիզի կոմունայի բարիկադների վրա: Իսկ այժմ...

Չգիտեմ, ազնիվ խոսք, չեմ պարծենում, բայց հանկարծ սիրտս քարացավ, չեմ ասի, թե վախս միանգամից անցավ: Ոտքերս էլի դողում էին, բայց



ՄԱՆՈՒՇԱԿ

Կանաչ սարում, մեծ ժայռի տակ,
Բացվեց կապույտ մի մանուշակ:
Հովը գրկեց ծաղկին անբիծ,
Ցողիկ բերեց ճերմակ ամպից:
Ժայռի գրկում, զով ստվերում,
Մանուշակն էր անուշ բուրում:
Մոտիկ գյուղից իր հոտն առած,
Սար բարձրացավ մի զառնարած
Փոքրիկ տղան, երբ նկատեց,
Հասավ ծաղիկն իսկույն պոկեց:
Պոկեց տարավ... տխրեց ժայռը,
Դատարկ թվաց նրան սարը:
«Ա՜խ դու անմիտ, ա՜խ դու անսիրտ»,
Խոսեց իր մեջ քարը այն բիրտ:
Ինչու՞ տարար զարդս միակ
Եվ ինձ թողիր այսպես մենակ»...

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ

ես արդեն գիտեի, որ ոչ մի քայլ չեմ հեռանա ջրհորից, որ կմնամ իմ պահակակետում կենդանի, թե մեռած…

Գրպանիցս հանեցի էլեկտրական լապտերիկը: Գիտեի, կարդացել էի, որ գայլերը վախենում են լույսից: Դողացող մատով սեղմեցի կոճակը և լույսի խուրձն ուղղեց դեպի մասրենին… Միթե՞ այդքան արագ ու աննկատ փախավ: Լապտերիս լույսը շոշափում էր մասրենին՝ խճճված բնից մինչև գանգուր կատարը: Չէ, մասրենու տակ ոչ մի գայլ չըկար: Երկար կննում էի, հետո լապտերը մարեցի… Մասրենու տակ կրկին երևացին գայլի աչքերը՝ իրենց սառը, կանաչավուն փայլով: Նորից սեղմեցի կոճակը, նորից մասրենու տակ ոչինչ չկար: Ինչ լինում է թող լինի. որոշեցի ու շարժվեցի առաջ: Չգիտեմ ինչու, գնում էի կուչեկուչ, իսկ սիրտս քիչ էր մնում դուրս թռչեր կրծքիցս: Վերջապես հասա մասրենուն: Չէ, դրա տակ



իսկապես ոչինչ չկար: Մատս լապտերի կոճակի վրա էր, երևի պատահաբար սեղմել էի, հանկարծ լույսը մարեց, և ուղիղ ոտքերիս առաջ ես կրկին տեսա կանաչավուն կըրակները: Կռացա, գետնին երկու փոքրիկ փտած փայտեր էին, իրարից հինգ սանտիմետր հեռու…

Ես այլևս երեխա չեմ: Այդ օրից շատ տարիներ են անցել ու ես շատ բան եմ տեսել կյանքում: Մեծ Հայրենականի օրերին իմ կրծքին մի քանի շքանշաններ ու մեդալներ կային, որ ստացել էի քաջության համար: Բայց հիմա էլ, երբ հիշում եմ այդ խորհըրդավոր գիշերը, սիրտս ուռչում է հպարտությունից: Այդ օրն առաջին անգամ ես հաղթահարեցի ինձ պաշարած սարսափը և զգացի, որ եթե հարկավոր լինի, ուրիշներից վատ չեմ կանգնի իմ մարտական պոստում, ուրիշներից վատ չեմ պաշտպանի իմ հայրենիքը: Ըստ երևույթին հենց այդ զգացումն էին ուզում դաստիարակել մեր ճամբարի ղեկավարները ճամբարականների մեջ, դա էր գաղտնիքը, դրա համար էին հնարել ջրհորի պահակակետը, թե չէ ջրհորից այլևս ոչ ոք չէր օգտվում և ոչ մի «դասակարգային թշնամի» ջուրը թունավորելու նպատակ չուներ:







# Ձայնը

ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ

*«Շատ հեռու ես հիմա ինձնից,*
*տրա՛ լա՛-լա՛-լա՜մ…»*

*Երգեց և ասաց, որ ինքն է հորինել: Ես հավատացի, որովհետև ասողը Զորիկն էր, որն ինձանից մեծ էր երկու տարով ու Ծիծեռնակաբերդ էր գնում լորտու որսալու, և որի հայրը, վերջիվերջո, երաժիշտ էր. ունեն թառ, դափ, վին և նույնիսկ՝ պարկապզուկ: Հավատացի, որովհետև նրա հայրը երգում էր:*

«Ես չգիտեմ, ու՞ր են տանում
ուղիները հեռավոր…»

*— Դու կոմպոզիտո՞ր ես,— հարցրի զգուշորեն:*

*— Այդ դեռ հարկավոր է պարզել,— ասաց Զորիկը, և ես մեծ հարգանքով լցվեցի դեպի նա:*

*— Դու վաղու՞ց ես հորինում,— հարցրի հետաքրքրությամբ:*

*— Հենց այսօրվանից,— պատասխանեց նա, և ես, չգիտես ինչու, հպարտացա: Ամեն ինչ պարզ էր, ինչպես բազմապատկման աղյուսակը, ինչպես մի բաժակ ջուրը, պատուհանից երևացող երկինքը. ընդամենը մի քանի ժամ առաջ հորինված երգ, տասնչորս տարեկան Զորիկ, թառ, պարկապզուկ, ուղիներ:*

*— Իսկ ո՞վ է նա,— հարցրի Զորիկին ընդհատելով:*

*— Ո՞վ,— չհասկացավ Զորիկը:*

*— «Շատ հեռու ես հիմա ինձնից, տրա՛-լա՛-լա՛-լա՜մ…»— կրկնեցի ես,— ո՞վ է այդ հեռավորը:*

*Այստեղ նա ճակատը կնճռոտեց, նստեց մայթեզրին, ծնոտը բռունցքին հենեց, տարուբերեց ոտքերը, իսկ ես սպասում էի համբերությամբ, որովհետև ինձ*

# Երգ, հեռավորություն

թվում էր, թե հիմա լսելու եմ մի շատ կարևոր բան. պարզելու եմ մի գաղտնիք, մի անծանոթ, բայց անհրաժեշտ բան։

— Նա...— սկսեց Զորիկը, ես, շունչս պահեցի. շարունակությունը սպասելով, սակայն շարունակությունը չեղավ։ Հիասթափված նստեցի նրա կողքին, ընդունեցի նույն դիրքն, ինչ որ նա՝ ցանկանալով գոնե այդպես թափանցել գաղտնիքի մեջ։ Չկարողացա ու զայրույթից քրտնեցի։

«Շատ հեռու ես հիմա ինձնից.
տրա՛-լա՛-լա՛-լա՛մ...»

լավեց ուղիղ ականջիս տակ, ապա ընդհատվեց, և Զորիկն անսպասելիորեն ասաց.

— Դա նա է, ով դեռևս չի եկել։

Ես զարմանքով նայեցի Զորիկին, քանի որ ոչինչ չհասկացա այդ խոսքերից։ Իսկ նա վեր կացավ, շալվարը թափ տվեց ու ասաց.

— Գնանք Ծիծեռնակաբերդ, լորտու բռնելու։

Ես ապուշ էի կտրել։ Երբեք ոչ մի անգամ Զորիկը չէր առաջարկել որևէ մեկին իր հետ այդպիսի ճանապարհորդության գնալ։ Մենք միայն տեսնում էինք նրան կեղտոտ կոշիկներով ու քերծված արմունկներով, տեսնում էինք ձեռքի դեղնադարչնագույն պարանը, որն ամենևին էլ պարան չէր, այլ լորտու, բայց դեռ մասնակից չէինք եղել նրա արշավանքներին։ Այդ պատճառով էլ մեզանից յուրաքանչյուրը մի քիչ նախանձում էր նրան, մի քիչ քաշվում էր նրանից, մի քիչ էլ՝ վախենում, թեև ես կարծում եմ, որ վերջինի համար պատճառ չունեինք։

— Իսկ նրանք թունավոր չե՞ն,— ինչ-որ բան ասած լինելու համար հարցրի ես։

— Ինքդ էլ գիտես, որ ոչ,— պատասխանեց Զորիկը,— գնացինք, քանի միտքս չեմ փոխել։

Ես հետևեցի նրան։

Քիչ անց մենք բարձրանում էինք Ծիծեռնակաբերդի լանջով։ Զորիկն ամբողջ ճանապարհին լուռ էր, նույնիսկ չէր երգում իր երգը. կարծես մոռացել էր երգի գոյության մասին։ Ես քայլում էի նրա կողքից և մտածում, թե ինչպես եմ մեր ճանապարհորդությունը բակում նկարագրելու, և արդեն պատկերացնում էի, թե ինչ դիրք պետք է ընդունեմ, դեմքի ինչ արտահայտություն։ Ես մտածում էի նաև այն մասին, թե ինչպես է ընթանալու որսը, ինչ հնարանքներ է Զորիկը գործածելու և թույլ կտա՞, արդյոք, որ ես էլ լորտուն ձեռքերումս պահեմ։ Մինչ իմ գլխով տարբեր բաներ էին անցնում, մենք կարգին խորացել էինք լանջն ի վեր և, շուռ գալով, ես տեսնում էի մեծ կամուրջը, վարդագույն տներն ու հնոցատան խողովակը, որի վրա ինչ ասես չենք գրում։ Զորիկը բարձրանում էր առանց ետ նայելու և արագ։ Ես սկսեցի հոգնել։

— Դեռ շա՞տ կա,— հարցրի ես։

— պետք է քարերի տակը նայել, ճանապարհից դուրս։ Բայց ի՞նչ իմաստ ունի բռնել նրանց, երբ տանն այսքան մոտիկ ենք։ Հարկավոր է որսալ հեռվում՝ մենակության մեջ, այդ ժամանակ ամեն ինչ հասկանալի է։

Եվ նա սկսեց երգել։

— Դու լորտունների՞ն ես դիմում,— հարցրի ես, միևնույն ժամանակ հասկանալով, որ հիմար բան է ասածս։

— Սա երգ է այն մասին, որ մի շատ կարևոր բան դեռ հեռու է քեզնից, որ նրան հարկավոր է մոտեցնել,— առանց իմ հիմարության վրա բարկանալու, պասաց Զորիկը։ Հետո նստեց մի քարի։ Ես դեռ կանգնած էի մնացել, բայց այս անգամ անհամբերությունից դողում էի։ Ես ուզում էի տեսնել լորտուների որսը։

— Սա երիցուկ է,— շարունակեց Զորիկը՝ մի ծաղիկ ցույց տալով,— շուրջն ուրիշ ծաղիկ չկա։ Երիցուկին հարկավոր է մի մեղու, որը կարողանա բզզալ,



Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

— Ուզում ես տու՞ն գնալ

— Չէ՛, ի՞նչ ես ասում։— Ես ոնց որ պետքն է, վախեցա։— Ուղղակի հետաքրքիր է։

— Լորտուներ այստեղ պատահում են ամեն քայլափոխին,— բացատրեց Զորիկը,—

ինչպես սազում է մեղվին, և հյութ հավաքել։ Հիմա նա հեռու է, և ես երգում եմ.

«...տրա՛-լա՛-լա՛-լա՛մ...»

— Իսկ այս քարը, որի վրա նստել եմ, ինձ սպասում էր։ Նրան հարկավոր էր, որ Զորայր

# ԾԻՏՆ ՈՒ ՏՂԱՆ

— Սիրուն ծիտիկ, արի տանեմ,
Տաք ու հարմար տանը պահեմ,
Գարունը գա, թռչես գնաս,
Երգես, պարես, ուրախանաս։

— Շնորհակալ եմ, իմ բարեկամ,
Բայց վանդակում ինչպե՞ս մնամ,
Ես ուզում եմ ազատ լինել
Ու երկնքում ուրախ ճախրել։

ԴՈՒՆԱՄԱՅԱՆ ՎՐՈՒՅՐ

Երևան, Ստ. Շահումյանի անվան դպրոց, 7-րդ դաս.



Մուշյանը գար, նստեր ու հանգըստանար բարձունք ելնելուց հետո: Բայց հենց որ ես գնամ, նրան նորից անհրաժեշտ կլինի մի երգ: Եվ ես կերգեմ:

«...տրա՛-լա՛-լա՛-լա՛մ...»

Իսկ լորտունե՞րը:

— Լորտուներին ես ոչ մի վատություն չեմ անում: Ես նրանց բռնում եմ, բերում բակ, որ տղաները տեսնեն, որ նրանք էլ տեսնեն տղաներին, թե չէ դարձյալ հեռու են իրարից: Հետո տանում եմ այնտեղ, որտեղ որսացել էի և ազատ արձակում: Լորտուները խաղաղ են:

Նա մի հողակոշտ վերցրեց, փշրեց, թափեց գետնին և հարցրեց.

— Դու Ծիծեռնակաբերդում եղած կայի՞ր:

— Ո՛չ,— պատասխանեցի ես,— բայց եղել եմ Սոչիում:

— Էլի բան է,— ասաց Զորիկը.— ես Ծիծեռնակաբերդից բացի ուրիշ տեղ չեմ եղել: Բայց պետք է լինեմ:

— Որտե՞ղ,— հարցրի ես:

Նա վեր կացավ ու ասաց.

— Հեռավոր ուղիներում:

— Եվ ի՞նչ պիտի անես:

— Գտնեմ այն, ինչ գտնված չէ, բայց անհրաժեշտ է, որ գտնվի:

— Այդ ուղիները սարսափելի՞ են:

— Ո՛վ է իմանում,— պատասխանեց նա,— բայց իմ հայրը նրանց մասին երգում է.

«Ես չգիտեմ, ուր են տանում ուղիները հեռավոր»...

Եվ նոր միայն ես նկատեցի, թե Զորիկն ինչքան է նման հորը: Նույնպիսի կեռ քիթ ունի և մազափունջն էլ նա է գցում նույն շարժումով:

— Տե՛ս,— հանկարծ ասաց Զորիկը:

Նայեցի, և իմ աչքովս ընկավ դեղնագորշավուն մի պարան, որ սողում էր ճանապարհի երկայնքով: Ես հասկացա, որ դա պարան չէ, այլ լորտու և լեզուս ատամներիս միջև սեղմեցի, սպասելով, թե ինչ հնարամտությամբ է Զորիկը որսալու նրան: Բայց Զորիկն անշարժ էր ու հայացքով հետևում էր սողունին: Երբ լորտուն, վերջապես, կորավ խոտերի մեջ, նա ասաց.

— Այսօր տրամադրություն չունեմ, արի իջնենք:

Մենք սկսեցինք վերադառնալ, և ինձ թվում էր, թե տխուր պիտի լինեի, քանի որ արշավն ավարտվել էր առանց որսորդության, բայց տխրություն չէի զգում, այլ երգելու պահանջ և անշշուկ երգում էի.

«Շատ հեռու ես հիմա ինձնից,
տրա՛-լա՛-լա-լա՛մ...»

Իմ երգը վերաբերում էր լորտուներին, երիցուկին, քարերին, ուղիներին և նրանց, ովքեր մնացել էին ինչ-որ տեղ, իմ տեսողությունից այն կողմ:

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նրանք շատ անսպասելի ծանոթացան:

Սպասեցեք... այսինքն՝ ինչպե՞ս թե՝ ծանոթացան: Երեք տարի սովորում էին նույն դասարանում և արդեն լավ գիտեին միմյանց՝ ո՛վ որտեղ է ապրում, ո՛վ ինչպես է սովորում, ծնողները որտե՛ղ են աշխատում... մի խոսքով, այնքան բան գիտեին միմյանց մասին, ինչքան կարող են մարդիկ իմանալ, եթե երեք տարի սովորեն միասին:

Բայց մի՞թե այդ կարելի է համարել իսկական ծանոթություն:

Բոլորովին էլ ոչ: Այս ամենը նշանակում է, որ մարդը մարդու մասին ինչ-որ տեղեկություններ ունի միայն:



Նրանց իսկական ծանոթությունը սկսվեց գարնանը:

Եվ ինչպես շատ հաճախ է պատահում, նրանց ծանոթությունը սկսվեց փոքրիկ, շատ փոքրիկ մի առիթով: Կիրակի էր: Հրաչը մի քանի ընկերոջ հետ փողոցում գնդակ էր խաղում, հանկարծ նկատեց Սոնային: Սոնան անցնում էր փողոցով, թղթի մեջ փաթաթված ինչ-որ կապույտ թևատակին: Սոնան էլ նկատեց Հրաչին ու կանգ առավ:

— Բա՛րև, Հրա՛չ,— ասաց նա:

— Բա՛րև,— պատասխանեց Հրաչը համարյա թե չնայելով Սոնայի կողմը, որովհետև այդ միջոցին տաքացած աշխատում էր «հակառակորդից» խլել գնդակը:

— Հրա՛չ, բարև՛,— նորից կրկնեց Սոնան:

— Ասացի՝ բարև՜,— սրտնեղած բացականչեց Հրաչը և հենց այդ միջոցին հակառակորդին վերջապես հաջողվեց նրանից խլել գնդակը:

— Հրա՛չ,— նորից ասաց Սոնան:

— Ի՞նչ կա,— դժկամորեն պատասխանեց Հրաչը և մոտեցավ:

— Ինչ կոպի՜տն ես,— ասաց Սոնան:

— Ի՞նչ կա, է՞,— նորից հարցրեց Հրաչը:

— Մարդու հետ իսկի կարգին խոսել էլ չես իմանում: Լո գնդակը չի՞ փախչի:

Ու ստացվեց այնպես, որ Հրաչը Սոնայի հետ մի կողմ քաշվեց, մինչ ընկերները շարունակում էին խաղը:

— Դե ասա՛:

— Դե լավ, որ էդքան դժգոհում ես՝ գնա՛,— ասաց Սոնան ու մի քայլ արեց, բայց Հրաչը շատ չարացավ.

— Սպասի՛ր, թե բան ես ասում՝ ասա՛:

Ընկերները շարունակում էին խաղալ, բայց աչքի պոչով հետևում էին Հրաչին ու Սոնային, որովհետև Գրիգորը գնդակին հարվածելով, մեկ էլ աշխատելով ձայնին քնքուշ-խրատական արտահայտություն տալ, բղավեց.

— Կոպիտ մի՜ եղիր, Հրա՛չ...

Հրաչը աչքի պոչով չարացած նայեց Գրիգորին ու ասաց.

— Լսո՛ւմ եմ, ասա՛...

— Խնդրում եմ, հետս արի, ես էստեղ մի տուն պետք է գնամ՝ պետք է անցնեմ մի բակի միջով, որովհետև իսկական ճանապարհը քանդել են՝ փակ է... Իսկ բակի մեջ շուն կա:

Սոնան այդ ասաց այնպես, ասես ոչ մի անսովոր բան չէր խնդրում, ասես հենց այդպես էլ պետք է լիներ, որ Հրաչը խաղը թողած գնար իրեն ուղեկցելու:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



— Գնանք,— դժկամորեն համաձայնեց Հրաչը:

Նրանք միասին քայլեցին:

— Հրա՛չ, էլ չե՞ս խաղում,— նրանց հետևից բղավեց Սամվելը:

Իսկ Գրիգորը նորից բացականչեց.

— Հրա՛չ, աղաչո՜ւմ եմ, կոպիտ մի՛ եղիր...

Հրաչը չլսելու տվեց:

— Շա՞տ կա, որ հասնենք,— հարցրեց նա:

— Ա՛յ էն նրբանցքն էլ որ ծռվենք՝ կհասնենք,— ասաց Սոնան,— սկզբում հայրիկս էլ էր այդպես անում:

Այսպես մոտեցան մի բակի, մտան բակի դռնով ու մյուսով դուրս եկան: Բակում իսկապես շուն կար: Միայն թե այնպիսի շուն էր, որ մարդ պետք է ահագին երևակայություն ունենա, որպեսզի դրան շուն համարի: Մի բռաչափ, սև, պոչատ, գետնի երեսին հազիվ երևացող մի արարած, որ պստլիկ թաթիկներով կողքից-կողք օրորվելով՝ շատ ծիծաղելի վազվզում էր:

— Սա՞ է շունը,— հարցրեց Հրաչը:

— Չէ՛,— անաց ՍոնաՆ:— Ավելի մեծՆ էլ կա: Դու էստեղ մի քիչ սպասիր, ես հիմա կգամ: Արդեն հասա:

Հրաչը պպզեց ու մոտ կանչեց շնիկին: Շնիկը սկզբում շատ էր վախենում, իսկ հետո կամաց-կամաց սիրտ արեց, մոտեցավ: Հրաչը սկսեց նրան շոյել, ականջների հետևը քորել: Շնիկը բոլորովին սիրտ առավ ու սկսեց արդեն իսկական շնային կատակները. իբր վախեցած փախչում էր, հետո թռչկոտելով մոտենում, մեջքի վրա թավալ տալիս, մի խոսքով, կարգին զբաղեցնում էր Հրաչին, այնպես որ նա չիմացավ էլ, թե ինչպես Սոնան եկավ:

Շնիկն այնքան էր բարեկամացել Հրաչի հետ, որ նրանց ուղեկցեց մինչև փողոցի անկյունը ու նույնիսկ կարծես ափսոսանքով ետ մնաց:



Ետ գալիս չէին խոսում: Երբ իրենց փողոցը հասան, Հրաչը տեսավ, որ տղաները չկան: Շատ բարկացավ: Ախր, որոշել էին կիրակի օրը գնալ ծաղիկ քաղելու: Դրա՞նց տես. չեն ուզեցել սպասել:

— Չհասկացա, էնտեղ ...՞ւր էր շուն,— շատ չափազանց հարցրեց նա:

— Ես ի՞նչ գիտեմ:

— Չէ՛,— պնդեց Հրաչը,— քո խաթեր տղաներին կորցրեցի, հիմի պետք է գնայինք ծաղիկ քաղելու: Չըգիտեմ, որտեղ որոշեցին գնալ: Դե ասա՛, որտե՞ղ էր շունը:

Այս անգամ Սոնան էլ բարկացավ:

— Ի՞նչ է,— ասաց նա,— շուն չկա՞ր: Ասա՛, շուն չկա՞ր: Բա էդ շո՞ւն չէր:

— Շո՞ւն էր,— ծաղրանքով հարցրեց Հրաչը:

— Չէ՛, կատու էր,— իր հերթին ծաղրեց Սոնան ու նեղացած, ավելացրեց.— Մե՞ծ բան, տղաներին կորցրեց, մե՞ծ բան...— հետո նա քայլերն արագացրեց ու հեռանալով Հրաչից, շարունակեց ճանապարհը:

Հրաչը մնաց տեղում կանգնած, մտածելով, թե ուր գնա, ինչպես գտնի ընկերներին: Մեկ էլ հետևից Սոնան ձայն տվեց.

— Հրա՛չ:

— Ի՞նչ կա:

— Սպասի՛ր, մի բան եմ ասում:

Հրաչը մոտ գնաց:

— Էլի ի՞նչ կա:

— Ա՛յ թե տղա ես, հա՜, մեջդ կարգին ունել ես: Մե՞ծ բան էր, մի քիչ պետք եկար մարդու: Մի ընկերներ էլ լինեին...

— Դե ասա՛, ինչո՞վ են վատ իմ ընկերները:

— Ես բոլորի մասին չեմ խոսում,— ասաց Սոնան,— օրինակ, Գրիգորը: Ես մենակ նրան նկատի ունեի: Նա քեզնից երկու տարով մեծ է:

— Նա իսկական, լավ ընկեր է, քաջ է, ոչնչից չի վախենում...

— Լավ ընկեր է, իհարկե, քեզ ծխել է սովորեցնում, ծխախոտներ է հյուրասիրում, փոքրերին ենթարկում է իրեն, ծեծում...

— Քո գլուխը չունեմ,— սրտնեղեց Հրաչը:

Այս անգամ նա շրջվեց, ուզեց հեռանալ, բայց Սոնան ձայն տվեց.

— Լսի՛ր, ուզո՞ւմ ես, մենք էլ գնանք ձորը:

— Ի՞նչ ձոր,— հարցրեց Հրաչը:

— Էստեղ, էլի՛, մոտիկ ձորը, ծաղիկի...

Ա՛յ հենց այդ օրն էլ ծանոթացան Հըրաչն ու Սոնան: Ծանոթացան իսկականից: Իսկականից ճանաչեցին իրար: Զարմանալի բան է, ուղղակի անհասկանալի. մարդիկ կարող են տարիներով ճանաչել իրար, միմյանց մասին ահագին բան իմանալ ու իրար չճանաչել ու հասարակ մի առիթով հանկարծ ճանաչել: Հիմա առիթը ի՞նչն էր: Շո՞ւնը, ծաղիկ քաղե՞լը, իրարից նեղացած խոսե՞լը: Ի՞նչ իմանաս... Ասենք՝ ձորում ծաղիկ քաղելիս մի դեպք էլ պատահեց:

Տղաներին հանդիպեցին: Հրաչն ու Սոնան ծաղիկ փնտրելով տարված, բարձրանում էին մի լանջով, երբ հանկարծ լսվեց Գրիգորի ձայնը.

— Ասացի՝ կոպիտ մի՛ եղիր, Հրա՛չ, մի՞թե կարելի է աղջիկներին բերել ծաղիկ քաղելու...

Տղաները նրանցից մի տասը քայլի վրա էին:

— Մի արի էստե՛ղ, բան եմ ասում,— նորից ձայն տվեց Գրիգորը:

Չնայած Սոնայի մի տեսակ հետաքրքրությամբ նայող հայացքի տակ դժվար էր այդ կարգադրությանը ենթարկվել, Հրաչը մոտեցավ:

— Մեզ թողեցիր, աղջկա հետ գնացիր, էլի՛,— արհամարհանքով հարցրեց Գրիգորը:

— Դե, ի՞նչ անեմ,— սկսեց արդարանալ Հրաչը,— էնտեղ բակում շուն կար...

— Շուն կար...— Գրիգորն արհամարհանքով հրեց նրան: Մյուս տղաները դիտողի դերում էին:— Մոռւթիդ կհասցնեմ՝ շուն կդառնաս,— նա նորից հրեց Հըրաչին, ավելի շուտ վիրավորանք, քան թե ցավ պատճառելու կամ թե նրան վայր գցելու նպատակով:

Եվ այդտեղ Սոնան զայրացած բղավեց.

— Լսի՛ր, դու ի՞նչ ես ուզում:

Գրիգորը այնպիսի զարմանքով նայեց Սոնային, կարծես առաջին անգամն էր տեսնում նրան: Նա, իհարկե, կեղծ էր զարմանում:

— Դու որտեղի՞ց լույս ընկար,— սկսեց նա, բայց անսպասելիորեն Հրաչը մի քայլ առաջ եկավ:

— Գրիգո՛ր, վե՛րջ տուր:

— Յա՛,— նորից զարմացած ձայնեց Գրիգորը:— Թե չէ...

— Ոչինչ, ասում եմ՝ վե՛րջ տուր:

— Ես հիմա քեզ վերջ կտամ,— ասաց սպառնալից Գրիգորը:

Հրաչը նայեց Գրիգորին ու քիչ էր մնում նրան չըճանաչի: Ինչպե՞ս թե վերջ կտա, ինչպես թե... Նշանակում է, նա կարող է իրեն ծեծե՞լ... Ու դեռ ընկեր է, հա՞... Ու կատաղությունը հանկարծ բարձրացավ նրա մեջ: Ի՞նչ անենք, որ Գրիգորը նրանից մեծ է և ուժեղ, ի՞նչ է, թողնենք, որ ով մեզանից մեծ է և ուժեղ՝ մեզ վիրավորի՞...

— Ո՞ւմ վերջ կտաս,— շնչակտուր լինելով հարցրեց Հրաչը,— իսկ Սոնան այդ միջոցին արագ մոտենալով, կանգնեց Հրաչի կողքին:

— Ո՞ւմ վերջ կտաս,— իր հերթին բղավեց նա Գրիգորի վրա:— Սրա՛ն տես, վերջ տվողին...

Գրիգորը սկզբում նորից զարմանքով, իսկ հետո կարծես թե սկսեց հարգանքով նայել Հրաչին ու Սոնային:

— Լավ,— անսպասելի ասաց նա ու հեռացավ:— Լավ,— կրկնեց նա, բայց որքան էլ աշխատում էր, չէր կարողանում ձայնին սպառնալից տոն տալ:— Լա՛վ,— վերջին անգամ, ավելի հեռվից, բղավեց նա:

Ինչ-որ զարմանալի մի հպարտություն, որի նմանը երբեք զգացած չէր եղել, հանկարծ շարժվեց Հրաչի սրտում: Նա բոլորովին ուրիշ մի հայացքով նայեց Սոնային և ասաց.

— Ա՛յ, կարծես թե էնտեղ ինչ-որ կարմիր ծաղիկներ են երևում, ինչքան էլ շատ են, ա՛յ...

— Է՛ս էլ տեսա,— ուրախ բացականչեց Սոնան, ու նրանք միասին վազեցին:

Իսկ երեկոյան մի զարմանալի բան պատահեց:

Գրիգորը փողոցից, լուսամուտների տակից, Հրաչին ձայն տվեց:

Հրաչը սկզբում չէր ուզում դուրս գալ: Չէ, ոչ թե վախենում էր, այլ, մի տեսակ, անախորժ էր: Ցերեկվա դեպքերից հետո... Ասենք, եթե կուզեք ճիշտն իմանալ՝ մի քիչ էլ վախենում էր: Հիմա արդեն մի քիչ վախենում էր: Բայց մեկ է՝ գնաց: Չգնալ չէր լինի: Մեկ էլ տեսար՝ տարածեցին, թե վախեցել է Գրիգորից, մեկ էլ տեսար՝ նույնիսկ Սոնայի ականջին հասավ: Ի՞նչ անենք, է՞, հո չի՞ ուտի...

Նա դուրս եկավ փողոց և տեղի ունեցավ անսպասելի մի բան:

— Արի մի քիչ նստենք,— ասաց նրան Գրիգորը:

Նստեցին փողոցում դրված նստարանին:

— Լսի՛ր,— ասաց Գրիգորը:— Էդ Սոնա՞ն է, ի՞նչ է...

Հրաչը լարվեց ու սպասեց անախորժ խոսակցության:

— Մի խոսքով,— շարունակեց Գրիգորը,— էդ Սոնան կարգին աղջիկ է, հա, իսկական աղջիկ... ընկերությո՞ւն եք անում...

— Հա՛, բա ի՞նչ,— անմիջապես պատասխանեց Հրաչը,— բա ի՞նչ,— և ավելացրեց,— գիտե՞ս ինչ լավ ընկեր է: Չէ՛, քեզ նման. աղջիկների մոտ ընկերոջդ վրա աքլորանաս... ու ի՞նչ լավ բան եմ քեզանից սովորում... Հո դո՞ւ ես ստիպում, որ դասերից փախչենք, հետո քաշ գանք, հո դո՞ւ ես ամենքիս ստիպում ծխել:

Զարմանալի բան կատարվեց:

— Հա՛, ճիշտ ես ասում, ես եմ,— տխուր ասաց Գրիգորը:— Ես եմ... Գիտե՞ս, ես էլ գիտեմ, որ լավ բան չեմ անում... Դե, բայց գիտե՞ս, արի ես ու դու իսկական ընկերություն անենք...— Մեկ-մեկ, այ, ինչպես ցերեկը, ես էլ եմ ամաչում...

Նրանք շատ-շատ խոսեցին, իսկ երբ բաժանվեցին, Հրաչին թվում էր, թե այդ օրը նա երկու նոր մարդու հետ է ծանոթացել. մեկը Սոնան էր, իսկ մյուսը՝ Գրիգորը:

Ա՛յ թե ինչպես կարող է պատահել, որ մարդիկ տարիներով իրար գիտենան, բայց մեկ օրում միմյանց ճանաչեն: Եվ ո՞վ ասաց, թե դրա համար առանձնապես մի կարևոր ու մեծ առիթ է հարկավոր:

Իսկ հաջորդ օրը, երբ դպրոցում հանդիպեցին, շատ ուրախացան:

Նրանց հանկարծ թվաց, թե երեկ շա՜տ-շատ դեպքեր են պատահել, և իրենք ահագին տպավորություններ ունեն իրար հետ բաժանելու: Դասամիջոցներին նրանք անընդհատ շատախոսում էին, իսկ տուն գնալիս, երբ փողոցում իրարից բաժանվում էին, Հրաչը կատակով խայթեց.

— Շո՛ւն... շո՛ւն... է՞ն էր քո շունը, բա նա շո՞ւն էր:

— Չէ՛, կատու էր,— նորից պատասխանեց Սոնան ու երկուսով էլ ծիծաղեցին:



Մեր պատանի ստեղծագործողները

## ԱՐԵՎԸ

Պայծառ արևն է երկնքում վառվում,
Կարծես հողին էլ արև է բացվում։
Բայց դա արև չէ, ցորենն է դեղին,
Որ որպես արև փռվել է հողին։
Փռվել է հողին ու դարձել հասկեր,
Դարձել ճառագայթ, մի-մի վառ արև։

## ԱՇՈՒՆ

Աշունն է նորից անձրևոտ ու թաց,
Արդեն չի երգում արտույտն անտառում։
Մշուշ է պատել դաշտերին թռչնած,
Էլ չի բոցկլտում պրևը գարնան,
Ոչ էլ հոսում է առուն քչքչան։
Միայն անձրևն է խշշալով, թափվում
Ու պարում օդում։

ՀԱՍՄԻԿ ՉԱՐԵՆՑ

Երևանի Չարենցի անվան դպրոցի
5-րդ դասարանի աշակերտուհի

Նկ. ԱՐԱՐԱՏ ԽԱՆՋԱՆՅԱՆԻ

արնանային մի առավոտ արագիլները հոգնած ու ուժասպառ իջան իրենց բնին, որտեղ այդ պահին նստած էր մի ճընճղուկ։ Արագիլները զայրացան, որ ճնճղուկը համարձակվել է զբաղեցնել իրենց բույնը, բայց տեսնելով նրա խղճուկ տեսքը, մեղմացան։ Մայր արագիլը նո՛յնիս՝ սկսեց խոսեցնել ճնճղուկին։

— Դու ինչո՞ւ ես այդպես դողդողում,— հարցրեց նա։

— Քիչ առաջ երեխանե՛րը քարով խփեցին իմ ընկերուհուն, և նա վայր ընկավ ծառից, ես վախեցած հազիվ թռա այստեղ, — լացակումած ասաց ճնճղուկը։

Այս լսելով արագիլները խիստ հուզվեցին և այլևս ոչինչ չհարցրին։ Ճնճղուկը հրաժեշտ տվեց արագիլներին և ուզեց թռչել, բայց չկարողացավ, վշտի պահին նա չէր զգացել, որ իր թևն էլ վիրավորված է։ Ստիպված լուռ կծկվեց բնի ծայրին, որ չխանգարի արագիլներին։

## ԲԱՐԻ ԵՐԵԽԱՆԵՐ ՇԱՏ

ՆԵԿՏԱՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Մինչ այդ, հանդարտ տեղացող անձրևը հորդացավ ու քանի գնում սաստկանում էր, իսկ ճնճղուկը անպաշտպան և վիրավոր կծկվել էր բնի ծայրին ու դողդողում էր։ Մայր արագիլը տեսնելով նրա վիճակը, զգուշորեն կտուցով քաշեց իր թևի տակ։

Հորդառատ անձրևը երկար չտևեց, թանձր ամպերը ցրվեցին, արևը փայլեց երկնակամարում։ Բայց ճնճղուկը այլևս չկարողացավ թռչել, թևի ցավը ավելի էր ուժեղացել, և նա մնաց բնին նստած։

Արագիլները հոգատարությամբ շրջապատեցին նրան։ Մայր արագիլը խնամում ու կերակրում էր իսկ հայր արագիլը համեղ պատառներ էր բերում։ Երբ վերքի ցավից ճնճղուկը չէր կարողանում հանգստանալ, մայր արագիլը ծածկում էր նրան իր թևով և պատմում էր իրենց հեռավոր թըռիչքների մասին, այն երկրների մասին, որտեղ նրանք ձմեռում են։ Ճնճղուկը հրապուրված լսում էր արագիլի պատմությունները ու մոռանալով իր ցավը, սկսում էր հարցեր տալ.

— Իսկ այնտեղ հատիկներ կա՞ն։

— Իհարկե, կան։

— Իսկ անձրևաորդեր կա՞ն։

— Կան։

— Իսկ չար տղաներ կա՞ն այնտեղ։

Արագիլը քիչ մտորեց ու ասաց.



# ԿԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

*— Չար տղաներ ամեն տեղ էլ կան, բայց նրանք քիչ են, իսկ բարի և խելոք երեխաներ՝ շա՜տ-շատ են աշխարհում...*

*Վերքը լավացավ, ճնճղուկը արդեն կարողանում էր թռչել, բայց նա իրեն մենակ էր զգում և դժվարանում էր բաժանվել արագիլներից: Մի անգամ ծառին նստած՝ խորհում էր իր վիճակի մասին, մեկ էլ ծլվլալով նրա կողքին նստեց մի սիրունիկ, կարմրակտուց ճնճղուկ: Կարմրակտուցը այնքան ծլվլաց, որ գրավեց նրա ուշադրությունը: Նրանք երկար զրուցեցին և, երբ արևը մայր էր մտնում, ճնճղուկը հրաժեշտ տվեց արագիլներին և թևին տվեց ու թռավ կարմրակտուցի հետ:*



*Անցան օրեր: Վրա հասավ ցրտաշունչ ձմեռը, դժվարացավ կեր ճարելը, ծիտիկները քաղցից ուժասպառ էին լինում: Երեխաները զգացին նրանց վիճակի ծանրությունը և օգնության հասան: Նրանք կեր էին ցանում ձյան վրա, որից օգտվում էին ճնճղուկները: Երբ կշտացած նրանք ծվարում էին բնում և այնտեղից նայում բակում խաղացող երեխաներին, համոզվում էին, որ իրոք բարի երեխաները շա՜տ-շատ են աշխարհում...*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ



Անգլիացի նշանավոր գրող Չեսթերտոնին հարցնում են, թե նա ի՞նչ գիրք կուզենար ունենալ իր ձեռքի տակ, եթե հանկարծ նավաբեկության հետևանքով հայտնվեր որևէ անմարդաբնակ կղզում:

— Նավեր կառուցելու վերաբերյալ լավ կազմված տեղեկատու գիրք, — անմիջապես պատասխանում է նա:

Հանդիպելով այգում զբոսնող Կռիլովին, որը շատ գեր էր, թեթևսոլիկ երիտասարդներից մեկը բարձրաձայն դիմում է ընկերներին.

— Ինչպիսի՜ վիթխարի ամպ է շարժվում մեզ վրա:

— Դրա համար էլ գորտերը սկսեցին կռկռալ,— պատասխանում է առակագիրը:



Վոլտերի գրքերից մեկը, ուր մերկացվում էին եկեղեցականները, գրաքննիչների կողմից դատապարտվեց այրման:

— Ավելի լավ,— նկատեց Վոլտերը,— իմ գրքերը նման են շագանակների, որքան շատ խորովեն, այնքան լավ կվաճառվեն:

Ժամանակակից և բրածո կենդանիների մեծ գիտակ, ֆրանսիացի գիտնական Կյուվեի աշակերտները մի անգամ որոշեցին վախեցնել իրենց հռչակավոր ուսուցչին: Նրանք երիտասարդներից մեկին հագցրին «գիշատիչ կենդանու մորթի, գլխին ամրացրին սարսափելի գազանի դիմակ՝ ահռելի երախով ու խոշոր եղջյուրներով, իսկ ոտքերին ամրացրին սմբակներ:

— Ես քեզ կուտեմ,—ճիչով ներս ընկնելով ուսուցչի ննջարանը, բղավեց աշակերտը:

Սակայն շվարեց ոչ թե ուսուցիչը, այլ «գիշատիչ» աշակերտը: Կյուվյեն նրան տեսնելով ծիծաղեց և ասաց. «Ես քեզանից չեմ վախենում, հրեշ: Բոլոր սմբակավոր կենդանիները միայն խոտ են ուտում: Դու չես կարող ինձ ուտել»:

# ՊԱՂՊԱՂԱԿԸ

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

— Հայրի՛կ, սպիտա՛կը տուր, պաղպաղակավաճառը երբ սև փող է տեսնում, բարկացած աչքերով, այ՛ այսպես, նայում է մեզ վրա,— ասաց Մելանիկը։

Հայրը ժպտաց ու մի սպիտակ դրամ գցեց աղջկա գոգնոցի գրպանը։ Մելանիկը անմիջապես փողը հանեց ու մատների մեջ շուռ ու մուռ տալով վազեց բակ։ Բայց հանկարծ իրեն չկարողացավ պահել և գլուխկոնծի տվեց։ Երեխաները սկսեցին ծիծաղել, իսկ նա շվարած նայում էր գետնին։ Զրնգոց էր լսել։ Հայրիկի տված դրամն էր գրպանից ընկել։

Երբ երեխաներն իմացան, որ փողը կորել է, անմիջապես որոշեցին օգնել Մելանիկին։ Ոմանք չոքած, ոմանք էլ կռացած, փնտրում էին։ Շատ չանցած՝ նորից զնգոց լսվեց։ Աշոտիկը գտել էր դրամը և բութ մատով հրում, նետում էր վեր ու վազվզում։ Մելանիկը բարկությունից քիչ էր մնում լաց լիներ։ Աշոտիկը մոտեցավ և դրամը մեկնեց աղջկան։

— Վերցրու՛, վերցրու՛... Ես կատակ արեցի։

Մելանիկն ուշի-ուշով զննեց ու երբ համոզվեց, որ հայրիկի տվածն է, վազեց դեպի փողոց։

Մայթը մարդաշատ էր, բոլորն էլ շտապում էին։ «Երևի պաղպաղակավաճառին են փնտրում»,— մտածեց Մելանիկը և հանկարծ լսեց ծանոթ ձայնը. «Պաղպաղա՜կ, պաղպաղա՜կ»։ Մելանիկը ժպտաց, ստուգեց ափի միջի դրամը։ Իսկ ձայնը գալիս էր մյուս մայթից։ Նա մի քանի քայլ ևս առաջ գնաց և կանգնեց մայթի եզրին, այստեղից արդեն երևում էր պաղպաղակավաճառը։ Բայց նրան հասնելու համար պետք է անցներ փողոցը, իսկ փողոցում շատ մեքենաներ կային։ Մելանիկը մի պահ ետ քաշվեց մայթի եզրից ու արդեն մտածեց վերադառնալ բակ, երբ



դարձյալ դիմացի մայթից լսվեց. «Պաղպաղա՜կ, պաղպաղա՜կ»։



Մելանիկը թեև վեց տարեկան էր, բայց լավ գիտեր, որ քիչ հեռու գտնվում է անցումը։ Նա շատ անգամ էր տատիկի ձեռքը բռնած անցել այդտեղից։

— Պաղպաղա՜կ։

«Բայց ես արդեն մեծ եմ,— մտածեց Մելանիկը։ — Ի՞նչ դժվար բան է փողոցն անցնելը որ...»

Մարդիկ կանգնած սպասում էին։ Մեքենաները գնում էին ու գալիս, հետո հանկարծ քարանում էին տեղում։ Երբ մեքենաները քարանում էին, այս անգամ էլ մարդիկ էին գնում ու գալիս։

«Ուրեմն, հենց որ մեքենաները քարանան, ես էլ կանցնեմ»,— որոշեց Մելանիկը։

Եվ իսկապես, շատ չանցած, մեքենաները նորից կանգնեցին։ Մելանիկը գոգնոցն ուղղեց ու իջավ մայթից։ Նա ժպտալով նայում էր այս ու այն կողմ։ Հսկա մեքենաները համբերությամբ սպասում էին, թե երբ պետք է նա անցնի։ Երբ հասավ փողոցի կենտրոնին ու համոզվեց, որ դա այնքան էլ սարսափելի բան չէ, մի պահ կանգ առավ ու որոշեց ուղղել գոգնոցը։

# 5 ՄԻԼԻՈՆ ՏԱՐԵԿԱՆ



Տուրիստական շարասյունը հոգնած հասավ ծորապռնկին։ Աշխարհագրության ուսուցիչ Վարդան Հարությունյանը հայտարարեց դադար։ Պատանի տուրիստներն անմիջապես ցած դրեցին ուսապարկերը, ցիցակները և գործի անցան։ Մի քանի րոպե անց՝ դադարի վայրում ծնունդ առավ 3 վրանից բաղկացած մի փոքրիկ «քաղաք»։ Այլևս ոչ ոք չսպասեց նոր հրահանգի։ Տղաները մոտիկ անտառից փայտ բերեցին և օջախ արեցին։ Աղջիկները ջուր տաքացրին, ճաշ պատրաստեցին։ Բայց ոչ ոք չկարողացավ ուտել



Ծլը՜նգ...

Ու մետաղադրամը արևի տակ փայլելով, սկսեց գլորվել փողոցն ի վար։ Մելանիկը ուզեց հասնել, բայց անցնելու հերթը մեքենաներին հասավ։ Նրանք պտտվելով անիվներից, աղմուկով ու ճռնչալով սկսեցին շարժվել վեր ու վար։ Մելանիկն ուզեց ետ դառնալ, բայց դա արդեն անհնար էր։ Նրան թվաց, թե ուր որ է այդ հսկաներն իրեն ոտնատակ կտան, սարսափից ճչաց ու փակեց աչքերը։

Այդ պահին շախմատանիշ կրող մի մեքենա կանգնեց Մելանիկի կողքին։ Վարորդը գրկեց աղջկան ու հանեց վտանգավոր գոտուց։

Անցումից քիչ այն կողմ, վարորդը խնդրում էր աղջկան բացել աչքերը։

— Մի՛ վախենա, աղջիկս,— ասում էր նա։

Բայց Մելանիկը համառում էր։ Եվ, ով գիտե, ինչքան ժամանակ փակ աչքերով կմնար, եթե ականջի տակ չլսեր ծանոթ ձայն.

— Պաղպաղա՜կ...

Նա սթափվեց։ Բացեց նախ՝ մեկ, հետո մյուս աչքը։ Իրեն տեսնելով մեքենայի մեջ, անծանոթ քեռու կողքին, որը ժպտում էր, նա փորձեց պտտել դռան բռնակները։

— Ու՞ր ես շտապում,— հարցրեց վարորդը։— Ինչու՞ էիր կանգնել փողոցի բանուկ մասում։

— Այ, այս ձեռքիս մեջ մի սպիտակ դրամ կար, հայրիկս էր տվել, ընկավ, հիմա կգնամ ու կգտնեմ։

— Սպասի՛ր, սպասի՛ր, ի սեր աստծո, ես արդեն գտել եմ,— ասաց վարորդը և մի քանի կոպեկանոց մեկնեց Մելանիկին։— Մյուս անգամ միայնակ դուրս չգաս փողոց... Երևի պաղպաղա՞կ էիր ուզում, հա՞... Ծո՜, բլլիկ աղջիկ ես երևում։

Մելանիկը ժպտաց, վերցրեց դրամը և ուշադիր զննելուց հետո, հոնքերը կիտեց ու ասաց.

— Սա իմ փողը չի՜։

Վարորդը շփոթված նայեց նրան։

— Ինչպե՞ս թե քոնը չէ,— ասաց նա, բայց մի պահ մտածելուց հետո ձեռքը տարավ գրպանը և այնտեղից մի բուռ սպիտակ դրամներ հանեց.— Երևի քոնը խառնվել է սրանց հետ, ջոկիր տես, թե քոնը որն է։

Մելանիկը նայեց, նայեց, հետո մի տասնհինգ կոպեկանոց վերցրեց։

— Սա է իմը... շնորհակալություն։

Հետո դուրս նետվեց մեքենայից ու վազեց դեպի պաղպաղակավաճառը... Բայց ճերմակ խալաթով հաստլիկ մորաքույրը, ինչ-որ երգ մրմնջալով, իջնում էր մայթեզրով։ Նա հեռվից քաշում էր փոքրիկ անվակներով սայլակը, որի վրա դրված շագանակագույն արկղը աղմուկով թրխկում էր։

Սառնարանը դատարկ էր։

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# ԽԵՑՈՒ ԵՎ ԱՆՀԱՆԳԻՍՏ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

քանի տարի առաջ Ալավերդու շրջանի Ղաչաղան գյուղից երեխաները վերադարձան ոգևորված։ Նրանք պատմեցին իրենց տպավորությունների մասին և դպրոցի դիրեկտոր ընկեր Սարգիս Մելիքսեթյանին խնդրեցին օգնել իրենց՝ հայրենագիտական թանգարանի ստեղծման գործում։ Դիրեկտորն ընդառաջեց, մի սենյակ հատկացրեց պատանի տուրիստներին...

Սակայն այդ մի սենյակը չբավարարեց երեխաներին։ Շուտով արշավներից և էքսկուրսիաներից թանգարանը հարստացավ Լոռուտ գյուղից բերված քարե մուր. սեփական ձեռքերով պատրաստած համեղ ճաշը, որովհետև...

— Եկեք այստե՛ղ, շու՛տ,— հանկարծ մոտիկ բլրի գագաթին երևաց Լեյլին,— տեսեք, թե ի՞նչ եմ գտել...

Քիչ հետո ամեն ինչ պարզվեց. Լեյլին հնագույն դամբարան էր գտել։

Պատանի տուրիստները խնամքով հավաքեցին դամբարանից դուրս բերված իրերը՝ նետի եռաթև սլաք, հին դրամ, ժանգոտած սուր, տարօրինակ հուլունքաշար... Եվ հենց այդտեղ էլ որոշեցին դպրոցում ստեղծել հայրենագիտական թանգարան, հավաքել հայրենի երկրում հայտնաբերված հնագույն իրերը, գնալ արշավների, ուսումնասիրել շրջակայքի պատմական հուշարձանները, տատիկների սնդուկներից «թռցնել» հնաբույր կենցաղային իրեր, հետաքրքիր ցուցանմուշներ...



Այս դեպքը տեղի ունեցավ մի



# ԶՆԾԱՂԻԿՆԵՐ

Հեռախոսը կնչաց: Ես գրիչը նետեցի սեղանին ու նետվեցի նախասենյակ:

— Ալլո՛:

— Ես եմ՝ Կարենը:

Քույրս, որ մայերն էր հարդարում, նայեց ինձ ու փոթկացրեց: Ես կզգացի, որ այտերս վարդագույն դարձան: Բայց ձևացրի, որ ինձ հետ ոչինչ չի պատահել ու ասացի.

— Լսում եմ, Կարե՛ն:

— Լիլի՛, Այսօր երեկոյան ազա՞տ ես:

— Դե ինչ ասեմ... Դասերս:

— Լիլի, շատ եմ խնդրում երեք ժամ հետո լինես...

Ես ոչինչ չասացի և կարմացած թոթվեցի ուսերս: Կարենը երբեք այդքան տարօրինակ ժամադրություն չէր նշանակել:

— Իսկ ինչու՞ այդքան ուշ,— կարմացա ես,— եթե մայրիկը գլխի ընկնի՞:

— Լավ էլի, Լիլի ջան, շատ եմ խնդրում, այս անգամ էլ թող իմ ուզածի պես լինի: Ճիշտ ժամը վեցին եղիր ամեն անգամվա տեղում: Լա՞վ:

— Լավ:

Ես շփոթված կախեցի լսափողը: Հետո նայեցի լռած լսափողին ու դանդաղ մոտեցա գրասեղանիս: Բայց միևնույն է, պարապել չէր լինում: Մտքերս թռչում էին [illegible]պի ժամը վեցը, փողոցը, որի անկյունում ինձ պիտի սպասեր Կարենը:

Վերջապես ժամը վեցին եա հագա վերարկուս և աստիճաններից ցած սուրացի: Փողոցում ձյունը հալվել էր ու փոքրիկ անձրևալճեր գոյացրել: Օդից գարուն էր բուրում: Մեր փողոցի պաղպաղակավաճառը ուրախ երգելով ներկում էր կրպակը: Ես ցեխաջրերի վրայով ցատկոտելով կտրեցի փողոցը: Արև՞ն էր պատճառը, թե բացվող գարունը, մտքումս մի երգ էր հնչում, որի բառերը չէի կարողանում հիշել: Վերջապես հասա ժամադրավայր: Կարենը չկար:

Անցավ հինգ րոպե, տասը րոպե, բայց Կարենը դեռ չկար: Բարկությունից ես որոշեցի Կարենի հետ կռվել և ամեն ինչ իր ուզածի հակառակը անել: Տասնըհինգ րոպե: Կարենը չկար: Ես սրտումս ինչ-որ վատ կզգացում ունեցա ու որոշեցի Կարենին ոչ մի վատ բան չասել: Միայն թե գար: Բայց Կարենը չկար: Իսկ ժամացույցը անխղճաբար ցույց էր տալիս ժամը վեց անց երեսուն րոպե: Ես չգիտեի ինչ անել: Կյանքումս երբեք ինձ հետ այդպիսի բան չէր պատահել և ես չգիտեի, թե ինչ են անում նման դեպքում աղջիկները: Հանկարծ ես կզգացի, որ դիմացի մայթից ուղիղ ինձ նայելով մոտենում է մի աղջիկ՝ ձնծաղիկի փունջը ձեռքին: Նա մոտեցավ ինձ ու շփոթված նայեց աչքերիս: Հետո անվստահ հարցրեց.

---

ներով, կավե ամաններով, հին սրերով: Դեբեդ գյուղի շրջակայքից գտնված կենցաղային զարմանալի իրերով, տախտակյա ճաշասեղանով, տարօրինակ թալիսմաններով: Ախթալայից ուղարկված բրոնզե կացնով, Օձունից՝ պաշտպանական գոտիով, Ղաչաղանից՝ 10-րդ դարում պատրաստված ջրատար կավե խողովակներով...

Երեխաների գործերի մասին իմացան ամբողջ բանավանում: Ակումբի վարչությունը օգնեց նրանց՝ ավելի մեծ սենյակ տրամադրելով: Տարեց մարդիկ նվիրեցին իրենց հին արխալուղները, արծաթե գոտիները, հնագույն կենցաղային, գյուղատնտեսական ու հողագործական իրերը...

Թանգարանն օրեցօր հարստանում էր: Նոր ցուցանմուշները հետաքրքրում էին ոչ միայն տեղացիներին, այլև մայրաքաղաքից և ուրիշ վայրերից ժամանած հյուրերին:

Բոլորի ուշադրությունը գրավում էին, հատկապես, 300 լիտրանոց կարասը, բրոնզեդարյան զարդարանքները, փայտե գեղեցիկ կժերը, կոտն ու գութանը, արորն ու չութը, խալին ու տնային սպասեղենը:

Բայց ամենից հետաքրքիրը միլիոնավոր տարիների կյանք տեսած խեցիներն են: Հայրենագիտական թանգարանի ամենահին ցուցանմուշը 5 միլիոն տարեկան է: Խեցին գտնվել է Շամուտ գյուղի մոտակայքում, մասնագետ գիտնականները հաստա-



## Մեր պատանի ստեղծագործողները

— Ներեցեք, դո՞ւք եք Լիլին:

— Այո՛,— ասացի ես ու զգացի, որ սիրտս սկըսեց ավելի արագ տրոփել:

Մենք անցանք մի քանի քայլ, բայց իրար ոչինչ չասացինք: Դրա համար այդ ճանապարհը ինձ երկար թվաց, չափազանց երկար: Ինչ-որ մեկը պետք է խոսեր: Բայց ո՞վ:

— Կարենը... — հանկարծ ասաց աղջիկը:

Ես ոչինչ չասացի: Միայն թե սիրտս շատ արագ էր տրոփում:

— Իմ եղբայրն է... Գնացել էր ձոր ձնծաղիկ բերելու, ժայռից սահել, կոտրել է ոտքը: Խընդրեց, որ գամ ձեզ հայտնեմ:

Ես հանկարծակի ցնցվեցի ու կանգ առա:

— Եվ ո՞ւմ էին պետք ձնծաղիկները, այս վաղ գարնանը,— շարունակում էր քույրը:

Ես չգիտեի, թե ո՛ւմ, բայց զգացի, որ ինչ-որ բանի համար ուրախ եմ: Չգիտեմ ինչու՛, համոզված էի, որ այդ ծաղիկները ինձ համար էին: Կարենը ցանկացել է անակնկալ անել ինձ:

Իմ միտքը աշխատում էր արագ, շատ արագ, բայց բառեր չէի գտնում արտահայտվելու: Աղջիկն էլ չէր խոսում: Թող չխոսեր:

— Ահա և մեր տունը,— հանկարծ կանգ առավ աղջիկը,— ուզում եք ձեր բարձրանանք, նա շատ կուրախանա:

— Ը՛... ոչ, այսինքն հետո, բարևեք,— մի կերպ արտասանեցի ես:

— Վա՜յ, քիչ մնաց մոռանայի,— հանկարծ ձեռքի ծաղիկները ինձ պարզեց քույրը:

— Կարենը խնդրել էր, որ ձեզ տամ: Սրա համար ոտքը կոտրեց,— հեգնանքով ժպտաց նա:



Նկ. ԷՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Ես վերցրի ձնծաղիկները ու համարյա հեկեկալով հեռացա:

Ծաղիկները դրեցի ծաղկամանի մեջ՝ իմ պատուհանի գոգին: Նրանք այնքան թույլ էին և ես չգիտեի կապրե՞ն, թե կթոշնեն: Ես պառկեցի իմ մահճակալին ու լուռ նայում էի ծաղիկներին: Բայց լաց չէի լինում: Ընդհակառակը, կարծես ուրախ էի, ինչ-որ բանի համար: Միայն թե այդ օրը առաջին անգամ ես ամբողջ գիշեր արթուն մնացի:

ԲԵՋՅԱՆ ԷԴՄԻԿ

*Երևանի № 114 դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի*

---

տել են աշխարհագրության ուսուցչի կարծիքը...

Անհանգիստ երեխաների հետաքրքրությունների շրջանակները ավելի ու ավելի են ընդարձակվում:

Սիրելի հայրենակցի՝ Հովհաննես Թումանյանի ծննդյան 100-ամյակի առթիվ, նրանք նոր ու հետաքրքիր մի գործ ևս ձեռնարկեցին: Որոշեցին գտնել մեծ բանաստեղծին պատկանող անձնական իրեր: Եվ ահա, երկար պրպտումներից հետո թանգարանում հայտնվեցին Հովհ. Թումանյանի գրքերը, բանաստեղծի անձնական կնիքը կրող 1885 թվականին լույս տեսած «Աղբյուր» պատկերազարդ ամսագրերը, փաստաթղթեր, անձնական իրեր...

Որոնումների ընթացքում գտնըվեցին նաև 1758 թվականին հրատարակված հայերեն հանրագիտարանի 4 հատորներ, «Կռունկ» ամսագրի առաջին համարները, Ջամչյանի քերականությունը, Երվանդ Լալայանի ազգագրական հանդեսի առանձին նմուշներ...

Երեխաները չեն մոռացել նաև իրենց անվանի հայրենակիցներին: Նրանք թանգարանում հատուկ բաժիններ են ստեղծել՝ նվիրված խիզախ հեղափոխականներ Դանուշ Շահվերդյանին, Մովսես Ջուրաբյանին...

Հնարավոր չէ մանրամասն պատմել հայրենագիտական թանգարանի հազարավոր ցուցանմուշների մասին: Հիմա այն տեղափոխվել է մի նոր շենք՝ բանավանի հրապարակի վրա մի ընդարձակ սենյակ, ուր նույնպես բոլոր ցուցանմուշները ցուցադրելու հնարավորություն չկա:

Պետք է այցելել Ալավերդու շրջանի Թումանյան բանավանի Խաչատուր Աբովյանի անվան դպրոցի հայրենագիտական թանգարանը և տեսնել 5 միլիոն տարեկան ցուցանմուշը, ծանոթանալ անհանգիստ երեխաների և նրանց եռանդաշատ ուսուցիչ ընկեր Վարդան Հարությունյանի հետ:

ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ

ԻՆՉՈՒ՞

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ ՈՐՏԵ՞Ղ

# ԻՆՉՊԻՍԻ՞Ն ԵՆ ԼԻՆՈՒՄ ՀՐԱՇՔՆԵՐԸ

Հին Բաբելոնում գլխավոր աստվածը Բելն էր: Նրան համարում էին հողի աստված, որը օգտըվում էր անսահմանափակ իրավունքներից: Քուրմերը ժողովրդին համոզում և ներշնչում էին, թե Բաբելոնի թագավորները իրենց իշխանությունն ստանում են Բել աստծուց: Բելը իր ձեռքում էր պահում բոլոր մարդկանց ճակատագրերը և ամեն վայրկյան կարող էր կտրել ցանկացած մահկանացուի կյանքի թելը: Բելը նաև տնօրինում էր բնության տարերքները, ուղարկում էր անձրևներ կամ չորային եղանակ, մարդկանց բարիքներ էր շնորհում կամ պատժում էր ձախորդություններով ու դժբախտություններով:

Այսպես էին քարոզում քուրմերը, որոնք, իրենց իսկ բառերով ասած, հանդիսանում էին հզոր Բելի կողմից «վստահության արժանացած միակ մարդիկ: Եվ քուրմերը չէին մոռանում միշտ հիշատակել, որ Բել աստվածը միշտ էլ զոհաբերություններ է ուզում, որոնց առատությունը կարող է մի քիչ մեղմաբարո դարձնել նրան:

Ամեն օր Բաբելոնի թագավորության հպատակները առատ նվերներ էին բերում ու դնում այն պատվանդանի առջև, որի վրա գտնվում էր Բելի արձանը: Տոն օրերին Բելն ստանում էր մոտ քառասուն ոչխար և վաթսուն սափոր գինի: Եվ այդ ամենը գիշերվա ընթացքում անհետ չքանում էր:

Հնագիտական արշավախմբերից մեկը, որ պեղումներ էր կատարում Նիփուր քաղաքում, որտեղ հազարավոր տարիներ առաջ եղել է Բել աստծո տաճարը, բացահայտեց այդ ագահ կուռքի գաղտնիքը: Հնագետները գտան այն գաղտնի դռները, որոնց միջով քուրմերը տաճար էին տանում Բել աստծուն բերված ընծաները: Եվ այդ օրերից ընծաները հենց այնպես էլ մնացին տաճարում: Մոտ յոթանասուն քուրմ, անհոգության ու առատության մեջ, ապրում էին տաճարում, և դեռ ավելին՝ աստծուն բերված ընծաներով կերակրում էին նաև իրենց ընտանիքները:




Բաբելոնյան աստվածը մեծ կոկորդ ուներ, զոհաբերությունները «կուլ տալու» համար: Իսկ հին Բաբելոնից հազարավոր կիլոմետրեր հեռու Չինաստանում, աստվածների արձանները կոկորդով էին օժտված... «Երկնային կամքը արտահայտելու համար»: Թե ինչպես էին չինացի քահանաները՝ բոնզաները, խոսեցնում իրենց աստվածներին, դուք տեսնում եք նկարում:

«Հրաշքներ կազմակերպելու» արվեստի բարձունքներին էին հասել հին Հունաստանի քուրմերը:

Հին հունական տաճարներից մեկի ավերակները պեղելիս հնագետները ամենայն մանրամասնությամբ կարողացան վերականգնել երբեմնի հանրահայտ «չցամաքող շատրվանի» մեխանիկան:

Այդ տաճարի կամարների տակ դրված էր բերնեբերան ջրով լի մի մեծ սափոր: Ուխտավորները անդադար օգտագործում էին այդ «սուրբ ջուրը», սակայն ջուրը երբեք չէր պակասում: Այդ «հրաշքը», ինչպես պարզվեց մեր ժամանակներում, հիմնված էր հաղորդակից անոթների օրենքի վրա, որն այժմ հայտնի է ամեն մի վեցերորդ դասարանցու: Պատի ետևում դրված էր ջրով լի տակառ, որը հատակի տակ թաքցրած խողովակով հաղորդակցված էր «չցամաքող շատրվանի» հետ: Երբ ուխտավորները փոքրիկ կըժերով ջուր էին վերցնում, թե սափորում և թե պատից այն կողմ գտնվող տակառում, բնականաբար, իջնում էր ջրի մակարդակը: Իջնում էր նաև լողացող խցանը, որը ծառայում էր որպես փական ավելի մեծ ավազանից հոսող ջրի շիթը կարգավորելու համար: Մեծ ավազանից սկսում էր ջուրը հո-

սել այնքան ժամանակ, մինչև հա-ղորդակից անոթներում ջրի մա-կարդակը բարձրանալով, բարձ-րանում էր նաև լողացող փականն ու ընդհատում հոսքը:

Այն ժամանակների համար ոչ պակաս նուրբ ու խելացի էին մը-տածված, «ամպրոպի տաճարի» «հրաշքները»: Ամեն անգամ, երբ քուրմերը բացում էին այդ տաճա-րի դռները, ներսից որոտի պես թնդում էր «աստծո ձայնը»: Ո՞րն էր գաղտնիքը: Ճախարակների մի-ջոցով տաճարի դուռը միացված էր այն լծակին, որը կարող էր բարձրացնել ու իջեցնել վիթխա-րի, մեջը դատարկ արույրե կիսա-գնդով խողովակը: Կիսագնդի տակ գտնվում էր ջրով լի մի տա-կառ: Դուռը բացելիս, շղթան ձգ-վում էր և կիսագունդը խորասուզ-վում էր ջրի մեջ: Կիսագնդի օդը դուրս էր մղվում ջրի կողմից՝ խը-լացուցիչ թնդյունով դուրս գալիս խողովակից:

Ջերմությունից ֆիզիկական




մարմինների ընդարձակվելու երե-վույթը ևս քուրմերն օգտագործում էին հին եգիպտական Իզիդա աստվածուհու զոհասեղանը «հրա-շագործ» դարձնելու համար: Բայց այդ «հրաշքը» բացահայտել է հին Հունաստանի նշանավոր ֆիզիկոս Հերոնը, որն ապրում և աշխա-տում էր Ալեքսանդրիա քաղաքում, այդ իսկ պատճառով էլ ստացել էր Ալեքսանդրիացի մականունը:

Իզիդա աստվածուհին ձեռքին ուներ թեքած սափոր: Երբ քուր-մերը արձանի առջև գտնվող զո-հասեղանին կրակ էին վառում, Ի-զիդան, որպես ողորմածության նշան, ձեռքի սափորից գինի էր թափում: Այս «հրաշքի» գաղտնիքն այն էր, որ զո-հասեղանի կրակի ջերմու-թյունից տաքանում էր հա-տուկ անոթի օդը: Ընդար-ձակված օդը սկսում էր մեկ ուրիշ անոթից դուրս մղել գինին, որը խողովակով բարձրանում էր վեր ու թափ-վում էր Իզիդայի ձեռքի սա-փորից:




Վերջերս բացահայտվեցին նաև այն «հրաշքների» գաղտնիք-ները, որոնց միջոցով Հնդկաս-տանի քուրմերը ապշեցնում էին իրենց հավատացյալներին:

Քուրմերից մեկին ողջ-ողջ պառկեցնում էին դագաղում, և թաղում հավատացյալների վիթ-խարի բազմության ներկայու-թյամբ: Հավատացյալներից ըն-տրված պահակները օր ու գիշեր հերթապահում էին շիրմի մոտ: Երկու շաբաթ հետո դարձյալ վկաների ներկայությամբ, շիրիմը հանդիսավորությամբ քան-դում էին, և դագաղից դուրս էր գալիս ողջ-ողջ թաղված քուրմը: Մարդիկ, ինչ խոսք, ապշում էին այդ «հրաշքը» տեսնելուց: Իսկ գաղտնիքն այն էր, որ քուրմը բացում էր դագաղի կողքին գտնվող դռնակը, մտնում էր ստոր-գետնյա անցքի մեջ, և սողալով հայտնվում մոտակա տաճարում: Երկու շաբաթ հետո, գերեզմանը բացելուց քիչ առաջ, նա նույն ճանապարհով վերադառնում ու հանգիստ պառկում էր դագաղում:

Այս բոլոր «հրաշքները», նա-խապատրաստվում էին լրջորեն ու բծախնդիր կերպով, դրանք հորի-նելու և իրականացնելու համար բազմաթիվ քուրմեր էին աշխա-տում: Բայց պատմության մեջ հի-շատակություններ են մնացել նաև այն «հրաշքների» մասին, որոնք կատարում էին «միայն հրաշա-գործները»: Ահավասիկ դրանցից մեկը:

Միջնադարյան թափառաշրջիկ մի կախարդ, իջևանելով որևէ պանդոկում, վճռում է ցուցադրել իր ամենազորությունը: Նա հաստ ձեռնափայտի ծայրը հպում է կը-րակի վրա դրած թավային: Մար-դիկ լարված հետաքրքրությամբ հետևում են նրան: Կախարդը բարձրաձայն սկսում է հմայել ո-գիներին և օգնության կանչել նը-րանց: Եվ հանկարծ, քար լռության մեջ լսվում է շատ ծանոթ մի թըշ-շոց. թավայում սկսում է եփվել ձվածեղը:

Եթե ականատեսներից մեկն ու մեկը համարձակվեր զննել «հը-րաշք» ձեռնափայտը, «հրաշքն» անմիջապես կբացահայտվեր: Ձեռնափայտի ծայրը սնամեջ էր, որտեղ նախօրոք կախարդը մի քանի ձվի պարունակություն էր լցրել: Անցքը փակել էր մեղրամո-մով: Երբ ձեռնափայտի ծայրը հպվել էր շիկացած թավային, մեղրամոմը հալվել ու հավկիթնե-րը հոսել էին ցած:

Ահա թե ինչպիսին էին հինա-վուրց ժամանակների «հրաշքնե-րը», որոնք ահաբեկում ու սարսա-փի մեջ էին պահում խավարամիտ ժողովրդին:

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 8 Օգոստոս 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 05599: Պատվեր՝ 730: Տպաքանակ՝ 54600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 7/VIII, 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.



1

Հաշվեցեք, թե քանի քառակուսի է պատկերված այս գծագրում։

2

Քանի՞ եռանկյունի կարող եք հաշվել այս գծագրում։





Երեք լուցկի տեղաշարժեք այնպես, որ հինգ քառակուսիներից ստացվի չորսը։

4

Փորձեցեք այս պատկերը մկրատի երկու հատումով կտրել այնպես, որ ստացված երեք մասից հնարավոր լինի կազմել քառակուսի։





## ՄԻ ԳԾՈՎ

Կարո՞ղ եք արդյոք նկարել այս պատկերը՝ մատիտի ծայրը առանց հեռացնելու թղթից և նույն գծի վրայով չանցնելով երկու անգամ։








## ԿԱՊԻԿՆԵՐԸ ՓԱԽԵԼ ԵՆ

Կենդանաբանական այգու վանդակներից փախել են կապիկները: Կարո՞ղ եք գտնել փախստականներին:

## ՆԿԱՐՉԻ ԱՐՎԵՍՏԱՆՈՑՈՒՄ

Ինչպես տեսնում եք, երկու օր է, ինչ նկարիչը ճանճ է նկարում: Կարո՞ղ եք նըկատել այն շուրջ 10 փոփոխությունները, որոնք կատարվել են արվեստանոցում:








18 շրջանակներից միայն երկուսն են միատեսակ: Գտեք, թե որոնք:

Ինդեքս 77806

# ՇՎԵՅՑԱՐԱՑԻ ԺԱՄԱԳՈՐԾԻ ԿՏԱԿԸ

Շվեյցարացի մի ժամագործ իր արտակարգ գեղեցիկ ոսկե ժամացույցը կտակել էր այն մարդուն, որը կկարողանար թվատախտակը երեք ծուռ գծերով բաժանել չորս մասի, բայց այնպես, որ յուրաքանչյուր մասի թվերի գումարը հավասար լիներ 15-ի: Երկար ժամանակ այդ խնդիրը ոչ ոք չէր կարողանում վճռել: Չէ՞ որ թվատախտակի բոլոր թվերի գումարը հավասար է 78-ի, իսկ մի՞թե հնարավոր է 78-ը բաժանել չորսի և ստանալ 15: Վերջապես, մի երիտասարդ ենթավարպետ, որը հայտնի էր իր խելքով ու հնարամտությամբ, ուշադրությամբ կարդաց կտակը և կարողացավ լուծել այդ դժվարին խնդիրը: Իսկ դո՛ւք, երեխանե՛ր, կարո՞ղ եք:







7 կոճակներից ո՞րը պետք է սեղմել, որպեսզի զանգը հնչի:




Ձեր կարծիքով այս վանդակներից որի՞ մեջ ավելի շատ կետ կա: Մտածելու համար տրվում է 10 վայրկյան:




Այս 9-ը բեղավորներից ո՞ր երեք հոգին են դուրս եկել երեկոյան զբոսանքի: